կոմիտէի քաղաքականութեան, 4120ը միայն հակառակ քուէ տուած են, այսինքն ժողովներուն ներկայ համայնավարներու 100ին 0,5ը։ 2676 հոգի ձեռնպահ մնացած են, այսինքն 100ին 0.3ը։ Նոյեմբեր ամսուան ընթացքին աւելի քան 70,000 բանւորներ դիմում ըրած են համայնավարներ կուսակցութեան մէջ մտնելու համար։

## Գործազրկութիւնը կը վերսկսի?

Աշխատանքի Նախարարութեան հրատարակած պաշտօնական վիճակագրութեան համաձայն, Նոյեմբեր 26ին ամբողջ Ֆրանսայի մէջ նպաստընկալ գործազուրկներու ընդհանուր թիւն էր 10,080 հոգի, որոնց 8,106ը այր եւ 1974ը կին։ Անցած շաբաթ այս թիւն էր 9611, ուրեմն մէկ շաբթուան մէջ նպաստընկալներու թիւը աւելցած է 469 հոգի։ Վերոյիշեալ գործազուրկներէն 5344ը (4285 այր եւ 1059 կին) կը գտնուին Փարիզի մէջ։ Անցած շաբաթ անոնց թիւն էր 49՚6, որով մէկ շաբթուան մէջ նպաստ ստացող գործազուրկներու թիւը 398 հոգի աւելցած է Փարիզ քաղաքին մէջ. իսկ ամբողջ Սէնի նահանգին մէջ այս յաւելումն է 475 հոգի։

Վերջացող շաբթուան ընթացքին գործի համար դիմում կատարողներէն 28,474 հոգիի (19,646 այր եւ 8828 կին) կարելի չէ եղած գործ հայթայթել։ Անցած շաբաթ 27,396 հոգիի կարելի չէր եղած գործ գտնել, որով անգործներու թիւը 1078 հոգի աւելցած է մէկ շաբթուան մէջ։

## Երկու Հայեր ձերբակալուած Պելճիքայի մէջ

Պրիւսէլէն կը հեռագրեն թէ Պելճիքայի մէջ ձերբակալուած են երկու վարպետորդի Հայեր՝ Վէմեան եւ Արապեան (ԽՄԲ.— Հեռագրին մէջ գրուած է Verniam եւ Aradjan), որոնք 30,000 տոլար շորթած են Նիւ Եորքի երեք առեւտրական հաստատութիւններէն։ Իրենք զիրենք իբրեւ հարուստ ցորենի վաճառականներ ներկայացնելով, Վէմեան եւ Արապեան Զուիցերիոյ մէջ հիւպատոսական կեղծ թուղթեր եւ կեղծ բեռնագիրներ կը շինեն եւ Ամերիկա կը ղրկեն գանոնք։ Այդ թուղթերը ստանալէ վերջ, յիշեալ ամերիկեան ընկերութիւնները բեռնագրին արժէքը յանձնեցին Նիւ Եորքի մէկ դրամատան։ Այս վերջինը Ցուրիխէն եւ Պեռնէն ստացուած հեռագիրներու վրայ, 30,000 տոլարը հեռագրով փոխադրեց զուիցերական դրամատուն մը, ուր Վէմեան հաշիւ մը բացած էր։ Վէմեան դրամը գանձեց եւ անհետացաւ իր ընկերոջ հետ։ Ամերիկացիները ի զուր սպասեցին ցորեն բեռցած շոգենաւերուն, որոնք բնաւ չհասան։

Առջի օր երբ այս նշանաւոր խաչագողները նման գործ մը կ'ընէին պելժ հաստատութեան մը հետ, ձերբակալուեցան Պրիւսէլի մէկ պանդոկին մէջ։ Իրենց գրպաններէն գտնուեցաւ 8000 տոլար դրամ։ Առաւ փախաւները պիտի յանձնուին զուիցերական ոստիկանութեան։

## Մ. Քեմալ չամուսնանար

Փարիզի Աֆղան դեսպանատունը եւ Անատոլուի գործակալութեան կը հերքեն այն զրոյցը, որուն համաձայն իբրեւ թէ Մուսթաֆա Քեմալ պիտի ամուսնանայ Աֆղանիստանի թագաւոր Էմիրին քրոջ՝ իշխանուհի Քուպրայի հետ։ Այս վերջինը ներկայիս գիշերօթիկ է Փարիզի Վիքթոր Տիւրիւի լիսէին մէջ եւ Հինգշաբթի օր երբ արձակուրդով աֆղան դեսպանատունը կը գտնուէր, զարմանքով կարդաց իր մասին գրուածները։ Իշխանուհին երբեք չի ճանչնար Մ. Քեմալը եւ Թուրքիան։

Լիսէի տնօրէնը կը յայտարարէ թէ իշխանուհի Քուպրա երբ անցեալ Փետրուարին դպրոց մտաւ, արդէն նշանուած էր ուրիշի հետ։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՍՈՖԻԱՅԻ մէջ 30 համայնավարներ ձերբակալուեցան։ Գրաւուեցան բազմաթիւ փաստաթուղթեր, որոնք ցոյց կուտան թէ համայնավարները կը ծրագրէին վերսկսիլ իրենց գործունէութիւնը Պուլկարիոյ մէջ։

ԱԼՊԱՆԱԿԱՆ կառավարութիւնը արգիլած է յունարէնի ուսուցումը դպրոցներու մէջ։

## ՅԱՅՏԱՐԱՐ

Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ խումբի ընկերական ժողովը այսօր կիր. առտու ժամը 10.30ին, Քաֆէ օ Փլէռ տը Լիոնի վերնայարկը,

Հ. Յ. Դ. Պելվիլի կոմիտէի դաստիարակչական ժողովը այսօր կիր. կէսօրէ վերջ ժամը 3ին, 131 Fbg-du Temple: կը խօսի ընկ. Վազգէն Շուշանեան։

Հ. Յ. Դ. Սարսէլի Հրայր խումբի ընկերները ժողովը կը հրաւիրուին այսօր կիր. ժամը 2.30ին, Rue des Beauves, Hôtel Beauséjourի մէջ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

Հ. Յ. Դ. Մարսէյլի «Քրիստափոր» Ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ 5 Դեկտ. երկուշբ. իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։



Դ. ԹԱՃԻՐԵԱՆ

ՓՈՐՁԱՌՈՒ ՀԱՇՈՒԱՊԱՀ

19, RUE HENRI MONNIER, PARIS (IXe)

ԲՈԼՈՐ ԱՌԵՒՏՐԱԿԱՆՆԵՐՈՒՆ,

Ֆրանս. ներկայ օրէնքներու համաձայն, ամէն առեւտրականի համար պարտաւորիչ է կանոնաւոր տոմարակալութիւն մը ունենալ, մանաւանդ որ տուրքի վարչութիւնը խստացուցած է իր controleը եւ փոփոխութիւններ մտցուցած է հարկատուներու պարտաւորութեանց մէջ:

Ուրեմն ջանալու է հաւանական դժուարութիւններէ եւ միանգամայն կամայական տուրքերէ, յաւելումներէ եւ տուգանքներէ զերծ մնալու մասին միջոցներ ձեռք առնել:

ՆՈՐ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝ ՆՈՐ ՄԻՋՈՑՆԵՐՈՒ ՊԷՏՔ ՈՒՆԻՆ

Մեզի վստահելով ձեր համարակալութիւնը եւ տուրքի սպասարկութիւնը, պաշտպանուած պիտի ըլլաք ամէն տեսակ օրինական տրամադրութեանց դէմ:

1. Մեր համարակալութեան մասնաւոր *սիսթէմը* այնպէս մըն է որ, առանց գինի յաւելման կը դիւրացնէ տուրքի խնդիրը եւ ամէն առեւտրական ուզած ատեն տեղեակ կ'ըլլայ իր իրական կացութեան:

2. Կը կատարենք տուրքի յայտարարութիւնները հարկատուին ամէնէն օգտակար եղանակով:

3. Կը կազմենք բոլոր փաստաթուղթերը, որ անհրաժեշտ են տուրքի յայտարարութեան:

4. Տուրքերու պաշտօնական ճշդման գործողութիւններուն ներկայ կը գտնուինք, անհրաժեշտ բացատրութիւնները տալու համար քննիչ մարմինին:

5. Տուրքի թուղթերը ըստ կանոնին կը քննենք:

6. Սխալ հարկադրութեան մը պարագային, կը կատարենք օգտակար ամէն դիմումներ եւ խնդիրը անձամբ կը կարգադրենք տուրքի քննիչին հետ:

Մեր աշխատութեան պայմանները շատ չափաւոր են. համեստ վարձքի մը փոխարէն ամէն գործողութիւն միասնաբար կը ստանձնենք:

Դ. ԹԱՃԻՐԵԱՆ

*Յ. Գ.— Առանց խորհելու Ձեր համարակալութիւնը մի վստահիք անծանօթի մը, կամ բաւականաչափ փորձառութիւն չունեցողի մը, ինչ որ ապագային ձեզի նեղութեանց դուռ պիտի բանայ:*

*ԾԱՆՕԹ.— Այս շրջաբերականը ղրկուած ըլլալով բոլոր առեւտրականներու, ամէնուն լուրջ ուշադրութիւնը կը հրաւիրուի անոր բովանդակութեան վրայ:*




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS 208bis, Rue Lafayette Paris(10)

Le Gérant: H. TEURNIER

արեւելեան ճեպընթացին մէջ, երբ յիշեալ երկիրներու սահմանը կը հասնի կառախումբը: Ուրիշ անպատեհութիւն մը այն է որ Հալէպէն Պոլիս գացող ճեպընթացին մէջ ճաշարան-վակոն չկայ և ճամբորդները ուտելիքէ կը նեղուին: Այս ճամբորդութիւնը, մէջն ըլլալով Տէր-Զօր եւ Պոլիս անցուած գիշերները 40 անգլիական ոսկիի կը նստի, առանց հաշուելու ուտելիքը:

## Միլռան եւ Համիտի ժառանգորդները

Աթէնքէն կը հեռագրեն 9 դեկտ. թուականով.—

Սուլթան Ապտիւլ Համիտի ազգականներն ու Թուրք կառավարութիւնը դատ բացած են՝ Սուլթանին Յունաստանի մէջ ունեցած կալուածները ձեռք ձգելու համար: Իրենց պաշտպան փաստաբանն է Ֆրանսայի Նախկին Հանրապետութեան Նախագահ Ալեքսանդր Միլռան: Սուլթան Համիտ ընդարձակ կալուածներ ունի Յունաստանի, Իրաքի, Իտալիոյ եւ ուրիշ երկիրներու մէջ: Ամէնէն առաջ պիտի տեսնուի դատը Յունաստանի ստացուածքներուն, որոնք կը բաղկանան մշակելի հողերէ, Սելանիկի քարափներէն, ձկնարաններէ, հանքերէ եւայլն: Քանի մը անգլիական եւ ամերիկեան ընկերութիւններ կազմուած էին շահագործելու համար այս ստացուածքները. ասոնց կարգէն են Anglo-Hellenic Finance Co., Ltd., Sultan Abdul Hamid Estates, Inc., եւ Abdul Hamid Trust, Ltd., որուն Յունաստանի ներկայացուցիչն է հարիւրապետ Ճոն Պէննէթ: Ասոնք հիմա միացուած են Aegean Co., Ltd. անունին տակ: Այս ընկերութիւնը արդէն առաջարկներ ներկայացուցած է Յոյն կառավարութեան՝ յիշեալ ստացուածքները վերադարձնելու համար:

Ասոնցմէ անկախ կայ նաեւ ուրիշ խմբակ մը՝ «Վալիտէ Թրըստ», որ կը հսկէ Սուլթան Ազիզի մօր՝ իշխանուհի Փէրթէվնիհալի (մեռած 1876ին) ազգականներու շահերուն:

Երկար խորհրդակցութիւններէ վերջ, իրաւագէտներու խորհուրդը որոշեց թէ Ապտիւլ Համիտ իրաւունք ունէր ստացուածքներ ունենալ Յունաստանի մէջ: Հելլէն կառավարութեան կողմէ կատարուած սեփականագրկումները եթէ կը համապատասխանեն հելլէն եւ թուրք օրէնքներուն, օրինական են և ժառանգորդները իրաւունք ունին այդ կալուածներուն վրայ, կը բաւէ որ հաստատեն թէ անոնք Ապտիւլ Համիտի կը պատկանին:

*** Ինչպէս գրեցինք, Միլռան քանի մը օր առաջ Պէյրութ հասաւ, պաշտպանելու համար դատ մը, որ պիտի տեսնուէր տեղւոյն Շէրիի դատարանին առջեւ: Սակայն իր հասնելէն քանի մը ժամ առաջ, յոյն օրթոտոքս պատրիարքին միջամտութեան վրայ, դատը հաշտարար կերպով կարգադրուած էր:

## Աֆղանիստանի թագաւորը կը ճամբորդէ

Աֆղանիստանի Թագաւորը Ամանուլլահ իր մայրաքաղաքը Քապուլէն մեկնած ատեն հրաժեշտի ճառ մը խօսեցաւ բարձրաստիճան պաշտօնատարներու առջեւ եւ ըսաւ թէ Աֆղանիստան յաւիտեան մնաս բարով ըսած է հին կայուն վիճակին եւ մտած է ներկայ դարու քաղաքակիրթ ազգերու ճամբուն մէջ: Վերջին ութ տարուան ընթացքին բարեկարգած է երկրին ներքին վիճակը եւ այժմ կը փափաքի ծանօթանալ Եւրոպայի ներկայ ապրելու եղանակներուն: Արդէն եւրոպական կարգ մը սովորութիւններ ընդունուած են Աֆղանիստանի մէջ, բայց ինք կը փափաքի ներմուծել ուրիշներ ալ, զորս փափաքելի կը նկատէ:

Թագաւորին կ՚ընկերանան Թագուհին, իր արտաքին նախարարը՝ սիրտար Մուհամմէտ Թարզի, փոխ-նախարար սիրտար Ղուլամ Սրտտիք խան, Քապուլի կառավարիչ Ալի Ահմէտ խան, Աֆղան Խորհրդարանի (Շուրա) նախագահ սիրտար Շիր Ահմէտ խան, լորտ Զէյպրլէյն, սիրտար Միւշիր Եաքուպ խան, Արքունի գանձապետ սիրտար Մուհամմէտ Հասան խան, պատերազմական փոխ-նախարար զօրավար Հապիպուլլահ խան եւ ուրիշ չորս բարձրաստիճան զինուորականներ:

Պոմպէյէն մեկնելէ վերջ, Թագաւորը նախ պիտի երթայ Եգիպտոս, ուր հիւր պիտի ըլլայ Ֆուատ Թագաւորին: Շատ հաւանական է որ յաջորդ այցելութիւնը կատարէ Մուսթաֆա Քէմալ փաշայի: Նոր Տարին սկիզբները պիտի հասնի Հռոմ և Իտալիոյ Թագաւորին ու Մուսոլինիի հիւր պիտի ըլլայ:

Ժամանակ մը Փարիզ մնալէ յետոյ Փետրուարի վերջը կամ Մարտի սկիզբը պիտի անցնի Լոնտոն ու պիտի այցելէ նաեւ ճարտարարուեստի գլխաւոր կեդրոնները: Անկէ յետոյ պիտի անցնի Պրիւքսէլ, Պերլին եւ Մոսկուա, ու կեդրոնական Ասիոյ ճամբով պիտի վերադառնայ իր երկիրը, հաւանաբար Պարսկաստանի հիւսիս-արեւելքին այցելութիւն մը տալէ վերջ ճամբու ընթացքին:

Թագաւորի բացակայութեան, պատերազմական նախարար սիրտար Մուհամմէտ Վալի խան խնամակալի պաշտօն պիտի վարէ:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՀԱՅԻՆ ԹԻԼԸՆ փոխանակ 2 ֆրանքի 2.05ի պիտի ծախուի դեկտեմբեր 15էն սկսեալ:

ԱԼԷԽԻՆ, Պուէնոս Այրէսի մէջ Արժանթինի Ակումբին կողմէ ճատրակի համաշխարհային ախոյեան հռչակուեցաւ: 10.000 տոլար մրցանակը բաժնուեցաւ նախորդ ախոյեան Քուպացի Քափապլանքայի եւ Ալէխինի միջեւ, որ ստացաւ 5400 տոլար: Ալէխին ռուս է, Փարիզի մէջ իրաւաբանական ուսանող էր եւ վերջերս ֆրանսական քաղաքացի դարձաւ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Ց. Դ. Պիյեանքուրի Զաւարեան խումբի ժողովը այսօր կիրակի ժամը 10ին, սովորական հաւաքատեղին:

Ջ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այսօր կիրակի ժամը 9ին, 61, Rue Monsieur le Prince:

ՓԱՐԻԶԻ Հայ Ուս. Միութեան ընդհ. ժողովը, վաղը Բշ. իրիկուն ժամը 8.30ին, Sociétés Savantesի G. սրահին մէջ, 28 Rue Serpente:

Օրակարգ.— Զեկոյց յանձնախումբներուն կողմէ եւ ընտրութիւն Վարչութեան:







ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ
կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի Փարիզի Հայ Սկաուտներուն կողմէ այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Salle de Géographieի մէջ, (184 Bld. St. Germain)











IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10e)
Le Gérant: H. TEURNIER

«Ագշամ» կը տեղեկանայ թէ Պոլսոյ Քաղաքապետն ու Ոստիկանութեան Տնօրէնն ալ պիտի փոխուին եւ թէ ընդարձակ փոփոխութիւններ պիտի կատարուին Պոլսոյ կուսակալութեան մէջ։

## Ծանր կացութիւն Չինաստանի մէջ

Վերջին լուրերու համաձայն, ծանր կացութիւն կը տիրէ Չինաստանի մէջ, կռիւները կը շարունակուին եւ մեծ թիւով համայնավարներ կը գնդակահարուին։ Հանքէուէն կը հեռագրեն թէ քանի մը հարիւր չինացի զինուորներ յարձակեցան խորհրդային հիւպատոսարանին եւ ուրիշ կեդրոններու վրայ, ձերբակալեցին մօտ երկու հարիւր համայնավարներ և գրաւեցին թնդանօթներ, ռազմամթերք ու մեծաքանակ պոլշեւիկեան թռուցիկներ։

Քանթօնի մէջ գնդակահարուած համայնավարներու թիւը 2000ի հասած է. շատերու դիակները փողոցներու մէջ կը քաշկռտուին։ Պաշարման վիճակը դեռ կը շարունակուի։ Շանկայէն կը հեռագրեն թէ խորհրդային հիւպատոսն ու փոխ-հիւպատոսը գերի բռնուած են եւ թէ Քանթօնի Սովետին պետը Եէն Թինկ կը պահուի։

Պոլշեւիկեան աղբիւրէ կը հաղորդեն որ Հունան քաղաքը շաբաթ մը պոլշեւիկներու ձեռքը մնալէ վերջ՝ կառավարական ուժերու կողմէ վերագրաւուած է. 1500 համայնավարներ սպաննուած են։ Հայիուֆէնկի մէջ եւս մեծ թիւով պոլշեւիկներ ջարդուած են։

Հանքէուէն մեկնելէ առաջ, զօր. Թան Լէն Չի, կողոպտած է Չինաստանի դրամատունը, ուր 72 սնտուկի մէջ 360,000 տոլարի արժաթեայ դրամ կար։

Մոսկուայէն հեռագիր մը կը հաստատէ թէ Քանթօնի մէջ պոլշեւիկեան խռովութիւններուն մասնակցող բոլոր անձերը ձերբակալուելով գնդակահարուած են։ Խուզարկութիւնները դեռ կը շարունակուին ամբողջ քաղաքը, մասնաւորաբար բանուորական շրջանակներու մէջ եւ բոլոր կասկածելիները կը ձերբակալուին։ Գնդակահարումներն ու կախաղանները հաշիւ չունին։

«Հավաս»ի թղթակիցը կը հեռագրէ թէ Քանթօն «մեռելներու քաղաք»ի մը երեւոյթն ունի։ Համայնավարներու դիակները խառն ի խուռն կը դիզուին սայլերու մէջ եւ թաղուելու կը տարուին։ Փողոցներու մէջ անհամար դիակներ փռուած են։ Ազգայնականները սոսկալի վրէժի դիմած են պոլշեւիկներուն դէմ։

Քանթօնի գերման ընդհանուր հիւպատոսարանը կողոպտուած է եւ գերման հիւպատոսը ֆրանսական հող ապաստանած է։

## Չեկայի տասնամեակը կը տօնեն

Ռուսական հեռագրի մը համաձայն, այսօր՝ կիրակի Մոսկուայի մէջ պիտի տօնուի Չեկայի կազմութեան տասնամեակը։ Չեկայի զինուորներէն մասնաւոր ջոկատներ զօրանդէս պիտի կատարեն Կարմիր հրապարակին վրայ։ Հեռագիրը կ՚աւելցնէ թէ Չեկայի բանակը կը բաղկանայ 100,000 զինուորներէ, որոնք դրուած են Ռուսիոյ զանազան ռազմագիտական կէտերուն վրայ եւ կը գործածուին այն նպատակներուն համար, զորս Ցարերուն օրով կը կատարէին Քոզաքները, այն է՝ զսպել գիւղացինեւ ու ապստամբութիւնը, տուրք չվճարող շրջանները անհրեկել, հարկահաւաքներուն ընկերակցիլ, ու ամէնէն կարեւորը՝ արգիլել նոյն ինքն Կարմիր Բանակին մէջ ապստամբութիւնները։ Մինչ սովորական կարմիր զինուորները ամսական 1 րուբլի 40 կոպէկ կը ստանան, Չեկայի զինուորներուն կը վճարուի 5 րուբլի, առկէ զատ ուսանող սպաներու հաւասար պարէն եւ զգեստեղէն կը տրուի։

## Մոսկուայի թուրք դեսպանը Կալինինի մօտ

Մոսկուայէն կը հեռագրուի թէ Թրքական նոր դեսպան Թէվֆիք պէյ ընդունուած է Կալինինի կողմէ, որուն յանձնած է իր հաւատարմագրերը։ Ընդունելութեան ներկայ եղած են Չիչէրին, Քարախան եւ Թուրք դեսպանատան պաշտօնատարները։ Այս առթիւ փոխադարձ ճառեր խօսած են՝ դրուատելով Թուրքեւռուս բարեկամութիւնը։

Թէվֆիք պէյ Լէնինի գերեզմանը այցելելով ծաղկեպսակ մը դրած եւ յայտարարած է թէ «պատիւ մը կը համարէ ծաղկեպսակ դնել Թրքասէր եւ ամէնէն մեծ յեղափոխական Լէնինի շիրիմին վրայ»։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՀԱՑԻՆ քիլոն, որ քանի մը օր առաջ 2 ֆրանք 05ի բարձրացած էր, Դեկտ. 22էն սկսեալ դարձեալ 2 ֆրանքի պիտի իջնէ։

ՀՆԼԼԷՆ կառավարութիւնը երեսփ. ժողովին ներկայացուց օրինագիծ մը, որով կ՚առաջարկէ ստեղծել Ծերակոյտ մը, բաղկացած 120 անդամներէ։

ՓԱՐԻԶԻ մէջ երկու օրէ ի վեր սաստիկ ցուրտ կ՚ընէ, քաղաքին մէջ 0էն 9, արուարձաններու մէջ 0էն 12 աստիճան վար ցոյց կուտայ ջերմաչափը։

ՊԱՂՏԱՏԷՆ կը հեռագրեն թէ Ֆէյսալ թագաւորը օդանաւով իր մայրաքաղաքը հասած է, չորս ամիս բացակայութենէ մը վերջ։ Քաղաքը դրօշազարդուած էր եւ գիշերը լուսավառութիւններ կատարուեցան։

ԱՆԳԼԻԻՐԱԺ դաշնագրին պատճէնը պիտի հրատարակուի Դեկտեմբեր 20ին։ Իրաքի վարչապետ Ճաֆէր փաշա Պաղտատ մեկնեցաւ։

ԵՐԳԱՀԱՆՆԵՐՈՒ ընկերակցութիւնը որոշած է հեղինակի իրաւունք պահանջել անթել հեռաձայնով նուագահանդէսներու բաժանորդներէն։

Հ. Մ. Ը. Մ.ի փարիզի ֆութպոլի խառն խումբը պիտի մրցի U. S. Suisseի խառն խումբին դէմ։ Հաւաքավայր՝ Porte St. Mandé ժամը 1ին։

*** պահեստի խումբը Stade Meulanaisի Ա. խումբին դէմ։ Հաւաքավայր՝ Gare St. Lazare ժամը 11.30ին։ Իջնել Mureaux։

*** Շաւիղի խումբը Stade Françaisի (H. C.) դէմ։ Ժամադրավայր՝ Porte de la Villette ժամը 12.30ին։ Մեկնում՝ ժամը 1ին։

*** «Իթալի»ի Ա. խումբը Pensée St. Mandéի Բ. խումբին դէմ։ Ժամադրավայր՝ Porte de Vincennes ժամը 11.50ին։

Այրի տիկին Մարի Եագուպեան (Նիւ Եորք), Տէր եւ Տիկին Լոզոֆէթ Եագուպեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Խ. Լորտիկեան եւ զաւակունք (Նիւ Եորք), Տէր եւ Տիկին Ն. Պէրպէրեան եւ զաւակունք (Նիւ Եորք), Տէր եւ Տիկին Գ. Ժամկոչեան եւ զաւակունք (Նիւ Եորք), Տէր եւ Տիկին Խասըրճեան (Կ. Պոլիս), Ա. Նէտիգարտաշեան (Կ. Պոլիս), Ս. Նէտիգարտաշեան եւ Եազըճեան, Պախթիյարեան, Ճամուգեան, Թէլլիեան ընտանիքները եւ ՚իամայն պարագաները կը ծանուցանեն դառնաղէտ մահը՝

### Պ. ԿԱՐԱՊԵՏ ՍԱՐԳԻՍ ԵԱԳՈՒՊԵԱՆԻ

իրենց զաւկին, եղբօր եւ ազգականին, 45 տարեկան, որ տեղի ունեցաւ յետ երկարատեւ հիւանդութեան։

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի վաղը՝ երկուշաբթի 19 դեկտ. Լոնտոնի Ս. Սարգիս եկեղեցին, ժամը 2ին։ Թաղումը՝ Kensal Riseի գերեզմանատունը։

### Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԿՈՄԻՏԷՆ

ընդհ. ժողովի կը հրաւիրէ փարիզի եւ շրջաններու ընկերները վաղը երկուշաբթի իրիկուն ժամը 8ին, Քաֆէ օ Քլէռ տը Լիւնի վերնայարկը, մէթրօ՝ Իթալի։

Օրակարգ.— Շրջ. կոմիտէի զեկուցումը եւ ընտրութիւն։ Ընկերներու ներկայութիւնը պարտադիր է։ Ներկայանալ անդամատետրերով։

ՕՐ. ԶՈՒԱՐԹ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ
ԵՒ
Պ. ՊԵՏՐՈՍ ՊԱՂՃԵԱՆ
ԱՄՈՒՍՆԱՑԱԾ
Gagny 18 դեկտ. 927

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռեմ եղբայրներս, Խաչատուր եւ Սարգիս Մաթէոսեանները (Գերջանցի), որոնցմէ 1916էն ի վեր լուր չունիմ։ Իմացնել իր եղբօր Յովհաննէս Մաթէոսեանի, 13 Rue des Dominicains, Marseille.

Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris(10)

Le Gérant: H. TEURNIER

դեցութիւնը կը մնայ խիստ մեծ Արեւելքի մէջ: Ուստի երկու երկիրներու միջեւ կապերը, հակառակ ամէն բանի, կը մնան վերջին ծայր զօրաւոր: Ահա՛ թէ ինչու ռուսական յեղափոխութեան տասնամեակին առթիւ խիստ սիրալիր հեռագիրներ փոխանակուեցան Մոսկուայի եւ Էնկիւրիի միջեւ: Մուսթաֆա Քէմալ հետեւեալ կերպով արտայայտուեցաւ.

«Խորհրդային Միութեան ժողովուրդները եւ Թուրք ազգը իրենց նոր կեանքի ամենածանր շրջաններուն իրարու հանդէպ միշտ փոխադարձ բարեկամութեան զգացումներ սնուցած ըլլալով, բնական է թէ Թուրք ժողովուրդը, որ խաղաղ յաղթանակներ տարած է ընկերային եւ տնտեսական մարզերու մէջ, միեւնոյն ժամանակ եւ միեւնոյն աստիճանով կը բաժնէ Միութեան ժողովուրդներուն ուրախութիւնը»:

«Նոյնքան սիրալիր են Կալինինի պատասխանը, ինչպէս նաեւ Ըսմէթ փաշայի ու Ռիկովի, Թէվֆիք Րիւշտի պէյի ու Չիչէրինի միջեւ փոխանակուած հեռագիրները: Եւ սակայն այս բոլորը արգելք չեղան որ Թուրք իշխանութիւնները խստիւ գործեն համայնավար պրոպագանդին դէմ: Թէեւ քաղաքականօրէն սերտիւ միացած Սովետներուն հետ, Թուրք Հանրապետութիւնը կը շարունակէ աւելի քան երբեք հակառակիլ անոնց ոգիին ու մեթոտներուն: կը մերժէ մահիկին ընկերացնել մուրճն ու մանգաղը, չուզեր երբեք ուրանալ անկախ ազգի իր իտէալը և կը մերժէ ո եւ է ձեւով մասնակցիլ համաշխարհային յեղափոխութեան աղետալի գործին»:

## Չիչէրինի սպառնալիքը

Քանթոնի մէջ պոլշեւիկեան փոխ-հիւպատոս Հասիսի սպանութեան եւ հակապոլշեւիկեան շարժումներուն առթիւ Չիչէրին սպառնալից յայտարարութիւններ կ'ընէ եւ կ'ըսէ թէ ատոնց պատասխանատուութիւնը կ'իյնայ մանաւանդ Անգլիոյ վրայ, որուն մամուլը ուրախութենէն կը խայտայ: Քանթոնի ջարդերուն եւ խորհրդային քաղաքացիներու սպանութեան մէջ խորհրդային կառավարութիւնը կը տեսնէ իրենց դէմ ուղղուած բացայայտ յարձակում մը: Ու Չիչէրին կ'եզրակացնէ.

«Շարունակելով հանդերձ իր խաղաղասէր քաղաքականութիւնը, որուն վերջին փաստը տուաւ Ժընեւի մէջ, խորհրդային կառավարութիւնը պատրաստ է մինչեւ ծայրը երթալ եւ անակնկալի չգալ: Խորհրդային կառավարութիւնը իրեն կը վերապահէ ձեռք առնել անհրաժեշտ միջոցները՝ Չարաւային Չինաստանի մէջ իրեն դէմ գործուած արինալի ոճիրներուն հետեւանքով:»

## Գործազրկութեան վիճակը

Պաշտօնաթերթի հրատարակած վերջին վիճակագրութեան համաձայն, անցած շաբաթ Նպաստընկալ գործազուրկներու թիւն էր՝ ամբողջ Ֆրանսայի մէջ՝ 11,267 հոգի, որոնց 9105ը այր եւ 2162ը կին: Առջի շաբաթ այս թիւն էր 10,786, այնպէս որ մէկ շաբաթուան մէջ աւելցած են 391 Նպաստընկալ գործազուրկներ:

Այս յաւելումը աւելի շատ զգալի է Փարիզի մէջ, ուր Նպաստընկալներն են 6131 հոգի, անցած շաբթուան վրայ 361 հոգի աւելի: Սէն նահանգի միւս մասերուն մէջ ալ 53 հոգի աւելցած է: Գաւառներու կացութեան մէջ գրեթէ փոփոխութիւն չկայ:

## Կէրէնսկիի ներկայացուցիչը դատը կը շահի

Նիւ Եորքէն կը հեռագրեն.—

1916ին Նիւ Եորքի Նաւահանգիստին մէջ պայթումի մը հետեւանքով փճացած էին մեծ քանակութեամբ ռազմանիւթեր, զորս ռուս կառավարութիւնը գնած էր ամերիկեան ընկերութիւններէ: Կէրէնսկիի իշխանութեան օրով Ուաշինկթընի ռուս դեսպանատան ելմտական կցորդ Սէրգէյ Ուկէթ դատ բացած էր ամերիկեան կառավարութեան դէմ եւ վնասուց հատուցում կը պահանջէր: Միացեալ Նահանգներու վերաքննիչ ատեանը՝ հիմնուած Նախկին արտաքին Նախարար Հիւզի 1923 Փետրուար թուակիր մէկ ծանուցագրին վրայ թէ Ուկէթ միակ ճանչցուած ռուս ներկայացուցիչն էր Միացեալ Նահանգներուն մէջ, վճռեց որ «ռուս պետութեան» վճարուի 984,104 տոլար՝ իբրեւ վնասուց հատուցում:

Այժմ խնդիր կը ծագի թէ որո՛ւ պիտի տրուի այս դրամը, քանի որ Ուկէթ այսօր չի ներկայացներ խորհրդային իշխանութիւնը: Սովետներու փաստաբան Չարլս Ռէխթ կ'առաջարկէ այդ գումարը դնել ամերիկեան գանձին մէջ, մինչեւ որ խորհրդարանը ճանչնայ պոլշեւիկեան կառավարութիւնը: Ու կ'աւելցնէ թէ այդ դրամը կարելի է գործածել՝ վճարելու համար Միացեալ Նահանգներու ռուս կառավարութենէն ունեցած պահանջը, որուն գումարը կը հասնի 183 միլիոն տոլարի:



## ՅԱՅՏԱՐԱՐ

Հ. Յ. Դ. Մարսէյլի Քրիստափոր ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ վաղը Երկուշբ. իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին: Շատ կարեւոր օրակարգ:

Հ. Յ. Դ. Լիոնի «Կայծակ» խումբի ժողովը 28 Դեկտ. Դշ. իրիկուն ժամը 8.30ին, Գրադարանի սրահը:

ՏԱՐՈՆ ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ Փարիզի Հայրենակց. միութեան ընդհանուր ժողովը այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Քաֆէ օ Բէլօ դը Լիոն:




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. TERNIER

